

# Ձմեռ

ԳՈՒՐԳԵՆ ՍՏԱՄԲՈԼՑՅԱՆ

Բլրի կատարից սուրում են ներքև,
Ձյունի վրայով սահում սրընթաց,
Վազում են, ընկնում ու ելնում թեթև
Եվ ձյունաթաթախ գլորվում են ցած:

Ի՜նչ կանի նրանց ձյունախառ քամին
Եվ կամ ձմեռվա ցուրտը ճքճքան.
Նրանց այտերը՝ նռան պես կարմիր,
Կրակ են կտրել ձեռքերը անգամ...

Ու դանդաղ, դանդաղ իջնում է ձյունը,
Լռիկ քսվում են փաթիլներն իրար,
Վարագուրում են բակը և տունը,
Բայց սահնակներն են սուրում անդադար:

Սահողներն ուրախ գլորվում են ցած
Եվ ձյունաթաթախ ելնում են կրկին...
Ի՜նչ կանի ձյունը, երբ ցրտահարված
Արևն է կարոտ նրանց կրակին...

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

# Պատշգամբում մենակ մնացած դեղձանիկը

ՎԱՀԱԳՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

Համիկը տնից դպրոց տանող երկու ճանապարհ գիտեր: Մեկը մի լայն պողոտա էր, շատ լայն ու այնքան երկար, որ նրա կարծիքով վերջ չուներ: Իսկ եթե անգամ պողոտան վերջ ուներ, Համիկն այնտեղ չէր եղել, որովհետև դեռ կեսին չհասած՝ հարկավոր էր թեքվել կողքի փողոցը, որտեղ դպրոցն էր: Մյուսը նրբանցք էր: Այդ նրբանցքը Համիկն ինքն էր հայտնագործել: Մի անգամ բոլորովին պատահաբար նա գնաց այդ նրբանցքով, մոլորվեց ու, երբ պատրաստվում էր լաց լինել, հանկարծ դուրս եկավ դպրոցի մոտ: Այդ օրվանից նա միշտ դպրոց էր գնում նրբանցքով: Հրաշալի էր այդ նրբանցքը՝ ասֆալտած չէր, նեղլիկ էր ու ծուռումուռ: Այնտեղ բազմաթիվ փշատի, բալի ու այլ ծառեր կային: Տներից մեկի դռանը մի փոքրիկ շնիկ էր կապված լինում: Շնիկն ամբողջովին սպիտակ էր ու ոչ մի անգամ չէր հաչում Համիկի վրա:

Երբ Համիկը հայտնագործեց նրբանցքը, արդեն մենակ էր դպրոց գնում ու վերադառնում, որովհետև նրան դուր էր գալիս քայլել մենակ: Իսկ Նունեն և Աշոտը, որ ապրում էին նույն շենքում և նրա հետ սովորում նույն դասարանում, առաջվա նման դպրոց էին գնում լայն պողոտայով:

— Դու ցույց կտա՞ս նրբանցքի տեղը,— հարցրեց Աշոտը:

— Ցույց կտամ,— ասաց Համիկը ու անմիջապես ավելացրեց. — Այդ նրբանցքը իմն է, ես եմ գտել:

— Իսկ շա՞տ է հեռու:

— Ոչ... ա՛յ արդեն հասնում ենք: Սա՛ է:

Նրանք երեքով կանգնեցին նրբանցքի մոտ, որ սկսվում էր սև քարով շարված մի տան մոտից:

— Դու չե՞ս սխալվում,— վախեցած նայելով նեղ, անծանոթ փողոցին՝ հարցրեց Նունեն:

— Ո՛չ,— հպարտ հայտարարեց Համիկը:

Նունեն կասկածանքով աչքը չէր հեռացնում նրբանցքից։

— Փո՞շոտ է,— հարցրեց նա։

— Շատ ծառեր կան,— հիշեց Համիկը։

— Մեծ շենքեր բոլորովին չկան,— Նունեն նայում էր հողաշեն ցածր տնակներին։

— Իսկ քո ինչի՞ն են պետք մեծ շենքերը,— հարցրեց Համիկը։

— Ճիշտ է,— համաձայնեց Աշոտը,— մեծ շենքեր ամեն օր էլ տեսնում ենք։ Իսկ քո նրբանցքում տղաներ կա՞ն։

— Կան, բայց նրանք կռվարար չեն։

— Ի՞նչ գիտես,— թերահավատորեն նկատեց տղան։

— Ինձ ոչ մի անգամ չեն նեղացրել։

Աշոտը ծիծաղեց.

— Էհ, դու աղջիկ ես։ Նրանք երևի չեն ուզեցել գլուխ դնել հետդ։

Համիկը նեղացավ։ Նա համոզված էր, որ ինքը ուժեղ է ամեն մի տղայից։ Իսկ Աշոտը կարծես թե վախկոտի մեկն էր։

— Համիկ, արի փողոցով գնանք,— ասաց Նունեն,— մենք միշտ երեքով միասին փողոցով էինք գնում, քանի դեռ չէիր գտել այդ նրբանցքը։

— Նրբանցքն ինձ ավելի է դուր գալիս։

— Փողոցն էլ է լավը։ Դու գիտե՞ս, որ այն մեծ շենքը համարյա վերջացնում են։

— Ո՞ր մեկը։

— Տասհարկանին,— հիշեցրեց Նունեն,— այն, որ սպիտակ քարից էր։ Արդեն ինը հարկ կառուցել են։ Միայն մի հարկ է մնացել։ Դու կգա՞ս մեզ հետ։ Իսկ ցայտաղբյուրից արդեն ջուր է գալիս։

— Ո՞ր ցայտաղբյուրից,— հետաքրքրվեց Համիկը։

— Այն, որ լրիվ մարմարից էր, սպիտակ մարմարից։ Ես ու Աշոտը այնտեղից միշտ ջուր ենք խմում։

— Մե՜ծ բան է,— ասաց Համիկը,— ես էլ եմ ջուր խմում։

— Ցայտաղբյուրի՞ց։

— Ծորակից։ Նրբանցքում մեծ ու սև ծորակ կա։

— Ծորակի ջուրը անհամ է,— ասաց Աշոտը,— հետո, խմելուց ջուրը լցվում է քիթդ։

— Շենքի վրա մի մարդ է աշխատում,— Նունեն դեռ փորձում էր համոզել ընկերոջուն,— ամեն անգամ մենք նրան ձեռքով ենք անում, նա էլ՝ մեզ։

— Մե՜ծ բան է,— ասաց Համիկը։

— Դե լա՛վ,— ձեռքը թափ տվեց Աշոտը ու մեծավարի ասաց,— չես ուզում՝ մի՛ արի, գնա քո նրբանցքով։

Համիկը նայեց նրանց հետևից։ Նա և՛ ուզում էր գնալ ընկերների հետ, և՛ չէր ուզում։ Ափսոսում էր, որ չի տեսնելու շենքը, որի ինը հարկը արդեն կառուցել էին, մարմարյա ցայտաղբյուրը և ձեռքով անող մարդուն։ Բայց միայն մի պահ։ Նա զգաց, որ իր նրբանցքն ամենալավն է։

Համիկը գնաց նրբանցքով, և նրբանցքն ուղղակի հրաշք էր, երևի քաղաքի ամենափոշոտ նրբանցքն էր և ամենածուռումուռը։ Նրբանցքի նույնպես ծուռտիկ փշատենիները ամենահրաշալի բույրն ունեին։

Համիկը մեծագույն հաճույք զգաց, երբ կոշիկները ծածկվեցին փոշու շերտով։ Նա կռացավ ու մատով կոշիկների քթերին երկու կլորիկ դեմք նկարեց։ Քանի որ շրջագծերը շատ էին փոքր, նա միայն նկարեց աչքերն ու բերանը, իսկ քթի համար տեղ չմնաց։ Երբ նա կանգնեց աղբյուրի սև ծորակի մոտ, ջրի կաթիլները ցայտեցին կոշիկների վրա և մարդուկների դեմքերը թրջվեցին։

Համիկն ավելի շուտ հասավ դպրոց, քան Աշոտն ու Նունեն։ Նա համոզվեց, որ իր նրբանցքը նաև ամենակարճ ճանապարհն է քաղաքում։



Դասամիջոցին Նունեն ասաց.

— Արի իմ կողքը նստիր։ Լևոնը հիվանդ է, և նրա տեղը՝ ազատ։

— Ոչ,— ասաց Համբիկը,— մենակ ավելի լավ է։

Նունեն չհասկացավ։ Համբիկն այդպես էլ գիտեր։ Նրանք երկուսն էլ երրորդ դասարանում էին։ Համբիկի նստարանը ամենավերջինն էր շարքում, և նա փաստորեն մենակ էր նստում։ Այդպես նա իրեն զգում էր չափազանց հարմար։ Ուզենար կնստեր ձախ կողմը, ուզենար՝ աջ։ Նրան էր պատկանում ամբողջ նստարանը։ Նրան էր պատկանում հրաշալի նրբանցքը։ Երբ դասն արդեն սկսված էր, Համբիկը հիշեց իր դեղձանիկին, որն ամբողջովին դեղին էր։ Դեղձանիկը մի շաբաթ առաջ հայրիկն էր նվիրել։ Համբիկը հիշեց, որ այդ մասին մինչև հիմա չի պատմել ո՛չ Աշոտին, ո՛չ Նունեին, ո՛չ էլ ուրիշ մեկին։ Իսկ դեղձանիկը մինչև հիմա ոչ մի անգամ չէր երգել։

Համբիկն ինքն էլ չիմացավ, թե ինչու հանկարծ տխրեց։ Նրան ձանձրացրեց նստարանի վրա աջ ու ձախ շարժվելը, և նա անապատելի կերպով նախանձեց Նունեին, որը փսփսում էր իր կողքը տեղափոխված աղջկա հետ։ Համբիկն անզուսպ ցանկություն զգաց որևէ մեկին պատմելու իր դեղձանիկի մասին, հարցնելու, թե ինչու նա ոչ մի անգամ չի երգում։

Երբ դասը վերջացավ, Համբիկը մենակ կանգնեց պատուհանի մոտ։ Ըստ սովորության նա չմոտեցավ աղջիկներին, որ իրար գլխի հավաքված դիտում էին ինչ-որ մեկի տիկնիկը։ Համբիկը շատ օրեր էր կանգնել պատուհանի մոտ։ Պատուհանից նա տեսել էր դպրոցի բակը, նրանից այն կողմ՝ տներ, տներից մեկում՝ մի տղայի, որն աղավնիներ էր պահում։ Տղան այդ օրը չերևաց և Համբիկը չլսեց ո՛չ նրա սուլոցը, ո՛չ էլ տեսավ աղավնիներին։ Կրծքով պատուհանի եզրին հենված, նա մտածեց. «Տեսնես, աղավնի՞ն է լավ, թե՞ դեղձանիկը»։ Ու այդ ժամանակ էլ նա հեռվից լսեց ընկերուհիների ուրախ ծիծաղը։

Դասերը վերջանալուց հետո Համբիկը բոլորից ուշ դուրս եկավ դասարանից։ Մեծ պայուսակը գլորում էր ծնկներին։ Նա առանց շտապելու քայլում էր նրբանցքով, գիտենալով, որ ինքն ավելի շուտ տեղ կհասնի, քան Աշոտն ու Նունեն։ Նա քայլում էր, ու փոշին նստում էր կոշիկների վրա։ Նա նայում էր վերև, ու արևը ծակծկում էր աչքերը։



Համբիկը դուրս եկավ նրբանցքից ու կանգնեց սև քարից շարված շենքի մոտ։ Նունեն և Աշոտը չէին երևում։ Համբիկը նայեց պողոտայով դեպի վեր։ Նա չտեսավ պողոտայի ծայրը, որովհետև պողոտան վերջ չուներ։

Պողոտայի մի մասում կանգնած էր բարձրահարկ շենքը, որի ինը հարկը կառուցել էին։ Բայց շենքը չէր երևում։ Շենքի մոտ սպիտակ մարմարից ցայտաղբյուր կար։ Այդ ցայտաղբյուրից երևի հիմա ջուր էին խմում Աշոտն ու Նունեն։ Նրանք երևի ձեռքով էին անում բարձր պատի վրա աշխատող մարդուն, և մարդը պատասխանում էր։ Նունեն և Աշոտը հավանորեն արդեն քայլում էին կողք-կողքի ու զրուցում իրար հետ։

Հանկարծ Համբիկն ըզգաց, որ ինքը նրանց է ուզում տեսնել, և գնաց պողոտայով դեպի վեր։ Նրան ընդառաջ էին գալիս պայուսակները ձեռքներին տղաներ ու աղջիկներ, բայց Աշոտն ու Նունեն չկային և բոլորն էլ անծանոթ էին։ Եթե գոնե մի ծանոթ հանդիպեր, Համբիկը նրան կպատմեր իր դեղձանիկի մասին։

Համբիկը հասավ բարձր շենքին ու կանգնեց ցայտաղբյուրի մոտ։ Հետո նայեց վերև և իններորդ հարկի պատի վրա տեսավ կեսօրվա արևը։ Շուտով դպրոցից տուն գնացող աշակերտները քչացան։ Հետո շոգ փողոցում հատուկենտ անցորդներ մնացին։ Շենքից դուրս եկավ փոշոտ կոշիկներ հագած մի մարդ ու մոտեցավ ցայտաղբյուրին։ Մարդը երկար, շատ երկար խմեց։ Ապա, զարմացնելով Համբիկին, մարդն սկսեց անթույլատրելի մի բան կատարել. նա լվացվում էր ցայտաղբյուրի ջրով։

— Դու խմե՞լ ես ուզում,— մարդն հանկարծ





բարձրացրեց իր թաց դեմքն ու շրջեց Համիկի կողմը։

Համիկը գլուխը թափահարեց։

— Ես տեսնում եմ՝ դու վաղուց ես կանգնած այստեղ։

— Ես սպասում եմ,— ասաց Համիկը։

Մարդն այլևս փոքրիկ աղջկա վրա ուշադրություն չդարձրեց ու շարունակեց ջուրը լայն ափերով խփել դեմքին։ Հանկարծ Համիկի մտքով անցավ, որ դա կարող է այն մարդը լինել, որ ձեռքով է անում պատի վրայից։

— Քեռի, դու ձեռքով անո՞ւմ ես։

Մարդը ափերը հեռացրեց երեսից, նայեց աղջկա ժպտացող դեմքին ու ոչինչ չհասկացավ։

— Դու պատի վրայից ձեռքով անո՞ւմ ես,— կրկնեց Համիկը։

Մարդը անսպասելիորեն ժպտաց։ Նա արևից այրված դեմք ուներ։

— Նայած երբ։ Եթե ծանոթ մարդ է անցնում, իհարկե, ձեռքով եմ անում նրան։

Համիկը տեսավ, որ մարդու շրթերը կեղտոտված են ինչ-որ շատ սպիտակ մի փոշուց։

— Ես Աշոտին ու Նունեին եմ սպասում,— ասաց նա։

— Չեմ ճանաչում։

— Ճանաչում ես։ Դու նրանց միշտ ձեռքով ես անում։

Մարդու այրված դեմքի վրա փայլում էին ջրի կաթիլները։ Իր հսկայական կերպարանքով նա կանգնել էր փոքրիկ աղջկա առաջ և չիմանալով անելիքը, շփոթված ժպտում էր։

— Դու նրանց միշտ ձեռքով ես անում,— զարմանալով մարդու մոռացկոտության վրա, ներողամտորեն կրկնեց Համիկը։

— Ե՞ս,— մարդը վեր քաշեց ուսերը,— ասենք, ո՞ւմ ձեռքով եմ անում։

— Ես նրանց եմ սպասում,— բացատրեց Համիկը։— Նրանք մեր շենքում են ապրում ու մեր դասարանից են։

— Այո, թե ի՞նչ,— ասաց մարդը,— նշանակում է, դու իզուր ես այստեղ սպասում։ Ավելի լավ է գնաս տուն և այնտեղ տեսնես ընկերներիդ։

— Նրանք միշտ այստեղից ջուր են խմում,— դժգոհեց Համիկը,— նրանք սկզբում կգան ջուր



խմելու, քեզ ձեռքով կանեն և նոր կգնան տուն։

— Նրանք երևի արդեն գնացել են։

Մարդը հանել էր թաշկինակը ու սրբում էր երեսը։ Բայց նա լավ չէր լվացվել և ճակատին էլի նույն սպիտակ փոշին էր քսված։ Եվ հանկարծ Համիկը հիշեց այն, ինչ վաղուց ուզում էր ասել։

— Ես դեղձանի՞կ ունեմ, քեռի՛,— բացականչեց նա։

Մարդը դարձյալ շփոթված, դեմքից հեռացրեց թաշկինակն ու նայեց փոքրիկ աղջկան։

— Ես դեղձանիկ ունեմ,— շարունակեց Համիկը,— բայց նա երբեք չի երգում։

— Չի՞ երգում,— ասաց նա,— դե երևի կերգի։

— Կերգի՞,— ուրախացավ Համիկը,— ուրեմն կերգի՞։

# ՁՄԵՌ

**ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ**

Պարում է քամին դաշտերի վրա,
Դաշտերի վրա մաղում է ձյուն,
Ճերմակ թաթին սև դնչիկը դրած՝
Մրսում է շունը ու լուռ թախծում։

Եվ ճնճղուկները էլ չեն ծվլվում,
Պահվել են խոտի դեզերի մեջ,
Եվ աղբյուրները էլ չեն գլգլում,
Չեն երգում կանաչ ծորերի մեջ...

Դաշտերի վրա ու բլուրների
Իջել է ճերմակ մի լռություն.

Ճամփեքի վրա ու կտուրների
Իջել է մի պաղ հանգստություն։

Բայց մանուկները չեն տխրում ցրտից,
Նրանք ուրախ են ձմռան համար,
Որ սահնակներով դեռ առավոտից
Սահում են ահա բլուրն ի վար։

Ձյունը փափուկ է ու տաք է անգամ,
Երբ դու խաղում ես ձյուների մեջ,
Ձյունը հալվում է շնչից մանկական,
Գարունն է ժպտում ձյուների մեջ։

*Մարդը շրջվեց ու գնաց, մինչև անգամ չպատասխանելով։ Համլիկը տխրած նայում էր նրա հետևից։ Հետո հանկարծ նրան թվաց, որ մարդը գնացել է, որպեսզի պատի վրայից ձեռքով անի իրեն։ Նա ժպտաց ու սպասեց։ Հետո, երբ նայեց վերև, պատի վրա արևը տեսավ, իսկ արևի կողքին՝ ինչ-որ մարդու։ Նա ձեռքով արեց։ Մարդը չէր պատասխանում։ Համլիկն էլի ու էլի ձեռքով արեց։ Նրա աչքերը ծակծկում էին արևի շողերը, իսկ նա վերև էր նայում։ Ապա հոգնեց ու երբ նայեց ասֆալտին, սև շրջանակներ տեսավ։*

*Ցայտաղբյուրի մոտ կանգնած՝ նա շարունակեց սպասել Աշոտին ու Նունեին։ Նրանք դեռ չէին երևում, բայց պետք է գային անպայման։ Երբ նրանք գային, մարդն արդեն ձեռքով կաներ։ Երեքով կխմեին ցայտաղբյուրի ջուրը ու երեքով էլ տուն կգնային։ Միասին կմտնեին իրենց տուն, կմոտենային վանդակին ու կկերակրեին դեղձանիկին։*

*Երբ Համլիկը նորից վերև նայեց, պատի վրա միայն մարդն էր մնացել, արևը չկար։ Համլիկը ձեռքով արեց. մարդը շատ էր բարձր և գուցե դրա համար չնկատեց նրան։*

*Շենքի ստվերը արդեն երկարել ու դիմացի մայթին էր հասնում, երբ Համլիկը լայն ու երկար պողոտայով գնաց ներքև։ Նրա ժապավենը բանդվել էր, իսկ մեծ պայուսակը դիպչում էր ծնկներին։*

*— Ինչո՞ւ ուշացար,— տանը բարկացավ մայրը,— Աշոտն ու Նունեն վաղուց են եկել։*

*Համլիկը մոտեցավ դեղձանիկի վանդակին։ Դեղձանիկը չէր կերել կորեկի հատիկները, որ առավոտյան Համլիկը լցրել էր նրա առաջ։ Համլիկը բացեց դռնակը ու նոր հատիկներ լցրեց։ Դեղձանիկը մոտ չեկավ կերին։*

*— Մա՛,— ասաց աղջիկը,— եթե դեղձանիկը ոչինչ չուտի, ի՞նչ կպատահի նրան։— Բայց մայրը չպատասխանեց, որովհետև արդեն խոհանոց էր գնացել և չէր լսել աղջկան։*





# Ձյունե հսկան

ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ

Նկ. ՍԱՐՈ ԿԱԼԵՆՑԻ

Երեխաներն ուզեցին
Պատրաստել մի ձնեմարդ։
Կարենն ասաց՝ այնպիսին,
Որ նա լինի միշտ զվարթ,
Ժպիտ շողա աչքերում,
Տխուր մարդկանց չեմ սիրում։

Սուրենն ասաց՝ թող լինի
Ուժեղ՝ նման դյուցազնի,
Ա՛յ, մեր Սասնա Դավթի պես.
Թույլերին չեմ սիրում ես։

Արամն ասաց՝ թող լինի
Վարդանի պես լայնալանջ,
Անդրանիկի նման քաջ.
Հերոսական մեր դարում
Վախկոտներին չեմ սիրում։

Գոհարն ասաց՝ թող լինի
Մաշտոցի պես իմաստուն,
Կամոյի պես համարձակ,
Կամքով ուժեղ, հաստատուն.
Մեր լուսավոր աշխարհում
Անխելքներին չեմ սիրում։

Սուրենն ասաց՝ թող լինի
Բարդու նման սլացիկ,
Արայի պես գեղեցիկ.
Այս մեր սիրուն աշխարհում
Տգեղներին չեմ սիրում։

Ու եռանդով անմեկին
Ձյուն կրեցին անդադար,
Պաղ ձյուներին խառնեցին
Երազանքներն իրենց վառ
Ու բարձունքում կերտեցին
Մի վիթխարի ձնեմարդ։
Ու երբ մի քիչ հեռացած
Նայում էին հիացած,
Թվում էր, թե այդ հսկան
Մի նոր մարդ է իսկական՝
Դեմքով առույգ ու զվարթ,
Անդրանիկի պես անպարտ,
Բարդու նման սլացիկ,
Արայի պես գեղեցիկ,
Վարդանի պես լայնալանջ,
Կամոյի պես աննահանջ,
Մաշտոցի պես իմաստուն
Ու Դավթի պես դյուցազուն։

# Ջոն ուղևորվում Կանադա



Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

ԽԱՉԻԿ ՀՐԱՉՅԱՆ

ԳԼՈՒԽ ՉՈՐՐՈՐԴ

Առավոտյան բոլորը քնած էին, երբ Մհերը հանկարծ ճչաց.

— Փա՛յտը։

Տղաները գլուխները վեր բարձրացրին։

— Ի՞նչ,— հարցրեց Աշոտը։

— Ի՞նչ, — հարցրեց Տիգրանը։

Արտակը ոչինչ չհարցրեց, որովհետև լեզուն կտրված էր։ Նա միայն մզզաց. «Մ—մ—մ»։

— Պայիկի փայտը չկա,— կրկնեց Մ՞հերը։

Աշոտը ձեռքը թափ տվեց.

— Ես էլ ասի՝ ինչ է պատահել։ Ավելի լավ. ստիպված չենք լինի այդ ավելորդ ծանրությունը հետներս քարշ տալ։ Պառկիր։

— Ախր հիշատակ էր։

— Թող մի կարգին բան տար հիշատակ, թե չէ՝ մահակ...

Տիգրանը կամացուկ թակեց դռնակը։ Լսվեց մոտեցող քայլերի ձայն, դռնակը բացվեց, ու բացվածքի մեջ երևաց Ալիսի շիկահեր գլուխը։

— Բարի լույս։ Հայրիկը ձեզ է սպասում։

— Հիմա գալիս ենք։ Խնդրում եմ, մի տես, ձեր չինարի տակ ստողոտ մի ձեռնափայտ չկա՞։ Երեկոյան մոռացել ենք այնտեղ։

— Հիմա վազեմ։

Տղաները դուրս եկան դռնակից։ Քուրան դեռևս հանգած էր, և դարբնոցում արտասովոր անդորրություն էր տիրում։ Երկաթի ու փայտածուխի հոտ էր գալիս։ Փոքրիկ պատուհանի մոտ, թախտի կողքին, հանդիսավոր լռությամբ կանգնած սպասում էին դարբինն ու իր որդիները։ Ինչպես երևում է, նրանք վաղուց էին ոտքի վրա. դարբնոցը կարգի էր բերված, ոտքի տակից հավաքել էին ամեն տեսակի թիթեղները, մետաղալարերը,

Սկիզբը՝ «Պիոներ» №№ 9, 10, 11, 12։



տաշտերը, դույլերը։ Հողե հատակը ավլած էր ու ջրցնած, թախտը, որ բատ երևույթին ծառայում էր և՛ իբրև մահճակալ, և՛ իբրև սեղան, կարգին հավաքած էր, և նրա վրա սպիտա՛կին էր տալիս մի մաքուր սփռոց. Նախաճաշն սպասում էր տղաներին։ Դարբինը և իր որդիները նույնպես մի տեսակ արտակարգ մաքուր էին, տոնականորեն տրամադրված։

Տղաները շփոթված բարևեցին ու կանգ առան։ Առանց հայացքը մեր հերոսներից կտրելու, դարբինն ինչ-որ բան մռմռաց քթի տակ։

— Հայրիկն ասում է, նախ պետք է լվացվել, մաքրվել, հետո բարև տալ,— ասաց ավագ եղբայրը և ձեռքով ցույց տվեց ելքը։ Տղաներն ամոթահար գնացին դեպի լվացարանը։ Երբ արդեն սրբվում էին, վազելով ներս ընկավ Ալիսը և ասաց, որ ծառի տակ ու մոտակայքում ոչ մի ստողոտ փայտ չկար։ Մհերը՝ քիթը կնճռոտեց, բայց Արտակը քաշեց նրա թևից։ Դարբինը նորից իր որդիների հետ հանդիսավոր դիրքով կանգնել էր թախտի մոտ։ Տղաներն էլ ակամայից նույն ձևով կանգնեցին նրանց դիմաց։ Դարբինը նորից ինչ-որ բան մռմռաց։

— Հայրիկն ասում է՝ հիմա կարելի է ողջունել։ Բարի լույս ձեզ։

— Բարի լույս։

Նորից խոսեց դարբինը, և որդին թարգմանեց.

— Սա մեր հայրիկն է, դարբին Գոտֆրիդը։ Ես Ֆրանցն եմ, Գոտֆրիդի ավագ որդին։ Սա Հանսն է, Գոտֆրիդի կրտսեր որդին։ Սա Ալիսն է, Գոտֆրիդի դուստրը։ Մեր մայրը հիմա քաղաքի տանն է։ Իսկ մենք այստեղ աշխատում ենք թագավորական պատվերի վրա, որն այսօր կավարտենք ու երեկոյան տուն կգանք։ Ձեր անուններն իմանալուց առաջ հայրիկն ուզում է մի բան պարզել։

Այդ պահին դարբինը ձեռքը տարավ, ինչ-որ բան վերցնելով մութ անկյունից, մեկնեց դեպի տղաները։

— Հայրիկը հարցնում է, թե այս մահակն ինչպե՞ս է ընկել ձեր ձեռքը։

Մհերն անհամբեր առաջ նետվեց.
— Պապիկի փա՛յտը։
Դարբինը մյուս ձեռքով ետ պահեց Մհերին։
Աշոտը շարադրեց փայտի պատմությունը։ Երբ վերջացրեց, դարբինը փայտը հանձնեց Մհերին, շոյեց նրա գլուխն ու ինչ-որ բան ասաց.
— Այժմ հայրիկն ուզում է իմանալ ձեր անունները։
— Իմ անունը Աշոտ է։
— Իմ անունը Տիգրան է։
— Իմ անունը Արտակ է։



— Իմ անունս Մհեր է։ Իսկ սա իմ շունն է, Բոթոթը։
Բոլորը ծիծաղեցին, հետո դարբնի հրավերով նստեցին նախաճաշի Երբ թեյեցին վերջացրին, դարբինը խոսեց.
— Հայրիկն ասում է, որ ձեր գալու նպատակը չի հարցնում, որովհետև գիտի։ Տղաները զարմանքով նայեցին իրար)։ Նա խնդրում է միայն ճշտությամբ կատարել այն, ինչ ինքն ասում է։ Հիմա դուք [illegible] կգնաք ուղիղ քաղաք։ Ճանապարհին ոչ մի տեղ կանգ չառնեք, ոչ ոքի հետ չխոսեք։ Քաղաքային դարպասից ներս մտնելիս պահակ ոստիկանը կհարցափորձի ձեզ՝ ում տղան եք, ում հետ եք քաղաքից դուրս եկել, երբ եք դուրս եկել, ինչու եք մենակ վերադառնում,— որովհետև երեխաներն առանց ծնողների իրավունք չունեն քաղաքային պարսպից դուրս գալ,— որևէ բան կհորինեք ու ներս կմտնեք։ Քաղաքում կգտնեք դարբին Գոտֆրիդի տունը՝ Բախտավորների Նրբանցքում, ու ներս կմտնեք։ Մայրիկին կասեք, որ սպասելու եք մեր վերադարձին և տնից դուրս չեք գա, մինչև մենք վերադառնանք։ Հայրիկն ասում է, որ եթե իր ասածները ճշտությամբ չկատարեք, փորձանք կգա գլխներիդ։ Հիմա գնացեք։
Տղաները ճամփա ընկան։ Թոբիլտանի դաշտերում նորից թնդաց արջամկան երգը.

Բայց մի օր էլ, կամացուկ,
Տեսան ինչն ինչոց է,
Երկարատև արձակուրդ,
Ճամփեցին հոր ծոցը...
Հա՜-հա՜... Ա՛յ քեզ արջամո՜ւկ...
Տեսան ինչն ինչոց է,
Հա՜-հա՜, տվին արձակուրդ,
Ճամփեցին հոր ծոցը...



Ճաշվա մոտերքը հասան քաղաքային դարպասին։ Քաղաքը շրջապատված էր բարձր պարսպով։ Աղյուսը տեղ-տեղ թափվել էր, կանաչով պատվել։ Չնայած դրան, պարիսպները դեռևս հաստատուն էին։ Տղաները մոտեցան դարպասին, որտեղ մի հսկա ոստիկան ստուգում էր անցագրերը։ Երկու զինվոր, հրացանները պատրաստ պահած, կանգնել էին դարպասի աջ ու ձախ կողմը, այնպես որ աննկատ ծլկելու մասին խոսք անգամ չէր կարող լինել։ Որոշեցին բախտները փորձել առանձին-առանձին, և Արտակը կաղին տալով մոտեցավ պատուհանին։ Տղաները, մի կողմ քաշված, հետևում էին նրան։

— Հիմա ներկայացում է խաղալու,— շշնջաց Աշոտը։

Ոստիկանը, առանց գլուխը բարձրացնելու, բեղերի միջից որոտաց բամբ ձայնով.

— Թո՛ւղթ։

— Հը՞,— գլուխը երկարացնելով դեպի լուսամուտը, ձեռքն ականջին տարավ Արտակը։

— Թո՛ւղթ։

— Հը՞,— Արտակը ականջն ավելի մոտեցրեց լուսամուտին։

— Թո՛ւղթ։

— Թո՞ւղթ...

Ոստիկանը, վերջապես, գլուխը բարձրացրեց սեղանից և, աչքերը կատաղությամբ փայլեցնելով, գոռաց.

— Խուլ ես, ի՞նչ է։ Անցագի՛ր։

— Հրամանք ես, փորս... էն բանը։ Եվ նա, առողջ ոտի վրա տնգտնգալով, երկու ձեռքով բռնեց փորը։

— Ի՞նչ...

— Ա՛յ, հենց հիմի էլ... Ը՜մ - մ - մ...

— Կորի՛ր այստեղից, լակոտ։ Ապականելու է չորս կողմ, արի ու աշխատիր զարշահոտության մեջ...

Արտակը ետ նայեց, աչքով արավ տղաներին և, փորը բռնած, կաղին տալով, ներս ընկավ քաղաքային դարպասից։

— Սատանան ո՞նց էլ տեղնուտեղը հորինեց,— հիացավ Աշոտը։ — Հիմա ես։

Եվ նա հանգիստ քայլերով մոտեցավ լուսամուտին։

— Պարոն ոստիկան...

— Թո՛ւղթ։

— Թո՛ւղթ չունեմ։

— Անցագիր։

— Անցագիր էլ չունեմ։

Ոստիկանը գլուխը բարձրացրեց։

— Քանի՞ տարեկան ես։

— Տասնչորս։

— Տասնչորս, տասնչորս... Շատ կլինես։ Տասնչորս։ Մի շուռ արի տեսնեմ։ Տասնչորս... Ո՞ւմ լակոտն ես...

— Քելլերի,— առանց երկար-բարակ մտածելու, վրա տվեց Աշոտը։

— Քելլերի, Քելլերի... Քելլերի՞... Սպասիր, սպասիր... Այդ ո՞ր Քելլերի։

— Այն, որ տավարած է։

— Տավարած Քելլերի։ Այո, իհարկե, ինչպես էի մոռացել... Իսկ ինչո՞ւ ես այսպես շուտ վերադառնում...

— Դե, տանը մի քիչ գործ կա... ելարանի մատները պիտի ամրացնեմ...

— Այո, այո, հասկանում եմ, ելարանի մատները... Իհարկե, օրինավոր տղան պետք է օգնի տնտեսության մեջ, պետք է աշխատի... Մենք բոլորս էլ աշխատում ենք, այո՛, այո՛... Թոբիլստանում պարազիտներ չկան ու չպետք է լինեն։ Ապրես, ապրես... — Նա ինչ-որ կոճակ սեղմեց, աշխատելով այդ անել աննկատ, ի միջի այլոց, բայց դա չխուսափեց Աշոտի հայացքից։ Առհասարակ Աշոտին սկսում էր կասկածելի թվալ ոստիկանի բարյացակամ, բաղցր-մեղցր տոնը։ Զինի՞. ծուղակ է պատրաստում, աշխատում է ժամանակ շահել... Իսկ եթե զանգեց ոստիկանատո՞ւն...

— Պարոն ոստիկան, կարո՞ղ եմ գնալ...

— Գնա՞լ... Այո, իհարկե, խնդրեմ... Միայն կարծեմ այն երկու տղաներն էլ քեզ հետ են, այնպես չէ՞։ Ինչ լավ մանչուկներ են։ Մի րոպե, մի րոպե,

հիմա երկրորդ էլ բաց կթողնեմ... Սպասիր նրանց մոտ, միայն մի րոպե, այս մարդուն բաց թողնեմ, վաղուց է սպասում... Ի՞նչ լավ կարիճներ են, երբ հրացանակիրներ... Հիմա, հիմա, այս րոպեին...

Աշոտը ետ եկավ և, աշխատելով հանգիստ երևալ, շշնջաց Տիգրանին.

— Գործերը վատ են. նա մեզ կասկածում է: Ամեն րոպե կարող են ոստիկաններ հայտնվել:

— Ինչի՞ց ես ենթադրում:

— Ես տեսա, թե նա ինչպես ինչ-որ կոճակ սեղմեց ու հանկարծ շատ սիրալիր դարձավ:

Տիգրանը շուրջը նայեց:

— Մհեր, հեռու մի՛ գնա,— ասաց նա, տղային մոտերքում չտեսնելով:

— Այստեղ եմ,— պատասխանեց Մհերը:

Տիգրանն ու Աշոտը զարմացան. Մհերի ձայնը լսվեց բոլորովին մոտիկից, իսկ ինքը չկար:

— Ձեռքդ տուր տեսնեմ,— ասաց Տիգրանը, ինչ-որ բան կռահելով:

Մհերի տաք թաթիկը նրա ափի մեջ էր:

— Հը՞,— անհամբերությամբ հարցրեց Աշոտը, բայց Գիտնականը չլսեց նրան:

— Դու ի՞նչ ես անում:

— Փայտե ձի եմ խաղում: Հոգնեցի ձեռնափայտը ուսիս պահելուց:

— Փայտը տուր ինձ:

— Առ:

Փայտը Տիգրանի ձեռքում էր, իսկ Մհերը, կանգնած նրանց կողքին, ուսն էր քորում: Տիգրանը խորամանկորեն ժպտաց ակնոցի տակ, մինչդեռ Աշոտն անհամբերությունից ուռում էր իրեն:



— Այս ի՞նչ հրաշք է:

— Ժամանակ չկա բացատրելու: Տեսնո՞ւմ ես ոստիկանական այն մեքենան. նա մեզ համար է եկել: Ա՛յ, քո բեղավոր բարեկամը մատնացույց է անում մեզ: Դե, շուտ, այդպես շշմած մի՛ նայիր ինձ:

— Ի՞նչ անեմ:

— Ոչինչ. հեծիր պապիկի մահակը՝ փայտե ձի պիտի խաղանք: Հիշո՞ւմ ես. «Ձի, ձի, փայտե ձի, մեր դուռը կապեցի...»

— Ձեռ ես առնում...

— Դե, եթե շատ ես ուզում ոստիկանների հետ զրուցել՝ խնդրեմ: Մհե՛ր, Քոթոթին գիրկդ առ ու հեծիր:

Մհերը հրամանը կրկնել չտվեց: Ու հենց որ հեծավ ձիուն՝ անհետացավ:

Ոստիկաններն իջան մեքենայից ու որսաշների պես նետվեցին նրանց կողմը:

— Շո՛ւտ, հիմար,— և Տիգրանը քաշեց Աշոտի թևից: Աշոտը տեղի տվեց ու հեծավ: Վերջինը նստեց Տիգրանը:

Ոստիկանները տարակուսանքով կանգ առան նրանց կողքին:

— Հենց նոր այստեղ էին, ո՞ւր կորան:

— Փնտրեք, փնտրեք... Այդ թփերի հետևում լավ նայեք: Ոչ մի տեղ չէին կարող անհետանալ:

Ոստիկանները համարյա տղաներին քսվելով՝ սրարշավ նետվեցին դեպի մոտակա թփերը:

— Գնացին,— կամացուկ ասաց Տիգրանը:

Հակա բեղավորը ամբողջ մարմնով դուրս էր կախվել լուսամուտից և կոկորդով մեկ բղավում էր.

— Կաշիներդ կքերթեմ, թե որ ձեռքից բաց եք թողել: Անբաննե՛ր, բամի կուլ տվողնե՛ր: Այդ ամբողջ տարածությունը սարքեք, մաղեք ու լակոտներին տվեք իմ ձեռքը...

Հանկարծ նա բղավեց կատաղած ցուլի պես.

— Այդ ո՞ր անասունն է հանաքի ժամանակ գտել... Քիթս բա՛ց թող, սրիկա... Հիմա էլ բե- բեղս... Ես քեզ ցույց կտամ,— և նա ձեռքը տարավ դեպի ատրճանակը, բայց մոտիկ ոչ որ չկար: Ոստիկանը զարմանքից չռված աչքերով չորս կողմն էր նայում: Ոչ մի շունչ արարած: Այս ի՞նչ բան



է. մի՞թե այդ նրանք են, որ դարձան... ան-անտեսանելի: Հնարավո՞ր բան է միթե... Բայց ախր այստեղ ոչ ոք չկար. մինչդեռ բիչ մնաց քիթն ու բեղերը պոկեին: Այլևս ոչ մի կասկած: Անհրաժեշտ է անհապաղ տագնապ հնչեցնել, ոտքի հանել ամբողջ ոստիկանությունն ու թագավորական գվարդիան: Թշնամին քաղաքի ներսում է, Թոբիլ Առաջինի կյանքը՝ վտանգի տակ. վայրկյանի հապաղումը մահվան է հավասար...

Սեղմվեցին բոլոր կոճակները, զանգեցին բոլոր հեռախոսները, գործի դրվեցին Թոբիլստանի բոլոր ռադիոկայանները:

Բոլորի՛ն, բոլորի՛ն, բոլորի՛ն:

Թոլիբի քաղաքացինե՛ր.

Թշնամին, թվով երեք՝ մարդ և մեկ շուն, գործադրելով ամեն կարգի ուխտադրուժ միջոցներ, թափանցել է մեր հայրենի քաղաքը:

Թոբիլ Առաջինի կյանքը վտանգի տակ է:

Թոբիլ Առաջինի կյանքը վտանգի տակ է:

ԹՈԲԻԼ ԱՌԱՋԻՆԻ ԿՅԱՆՔԸ ՎՏԱՆԳԻ ՏԱԿ Է:

Ամեն գնով պետք է կանխել հրեշավոր ոճրագործությունը, կտրել այն դավադիր ձեռքը, որը կբարձրանա մեզ համար ամենանվիրական կյանքի դեմ:

Զգոնությո՛ւն, զգոնությո՛ւն, զգոնությո՛ւն:

Հինգ րոպեում քաղաքի փողոցներն ամայացան: Ջահել ու ծեր, կին ու երեխա լեղապատառ ներս ընկան, դուռ ու լուսամուտ դրեցին, իջեցրին վարագույրները: Քաղաքային շուկան ամայացավ, և վաճառողները սկսեցին պարապությունից ճանճ որսալ: Նույնիսկ շներն ու կատուները, որ սովորաբար ազատ ելումուտ ունեին քաղաքում, ինչ-որ արտակարգ վտանգ կանխազգալով, պոչներն իրենց քաշեցին:

Թագավորական գվարդիան խիտ շղթայով շրջափակեց Թոբիլ Առաջինի պալատը, այնպես որ այնտեղից ճանճ անգամ չէր կարող անցնել: Կայազորի զորքերն ու ոստիկանական ջոկատները հեղեղեցին քաղաքը: Փողոցները լցվեցին ծանր սապոգների դոփյունով: Քաղաքային պարսպի պաշտպանությունն ուժեղացվեց, իսկ դարպասները, բացառությամբ մեկի, փակվեցին: Թոլիբ քաղաքը պատրաստ էր մահու և կենաց գոտեմարտի:

Մինչդեռ ուխտադրուժ թշնամին թափանցել էր քաղաք և կամենում էր ներսից քայքայել Թոլիբցիների պաշտպանական ոգին:

Ահա այդ թշնամիներից մեկը՝ Արտակ-Պեպենը, քթի տակ ուրախ մի երգ սուլելով, (դա, իհարկե, արջամկան երգն էր), քայլում է Թոլիբի փողոցներով ու խաչմերուկներում կարդում փողոցների անունները: Նա, անշուշտ, փնտրում է Բախտավորների նրբանցքը, որտեղ գտնվում է դարբին Գոտֆրիդի տունը: Այդ անհոգ տղան բոլորովին չի լսում բարձրախոսների տագնապալից ահազանգումները և, իհարկե, չգիտե, որ այս արտասովոր ամայության պատճառներից մեկն էլ ինքն է՝ Արտակ-Պեպենը: Նա հենց նոր է մտել քաղաք (հիմարացնելով անցագրեր ստուգող ոստիկանին) ու դեռևս գտնվում է մեծ քաղաքի ծայրամասում: Շուտով կհասնի կենտրոն և, իհարկե, երես առ երես կհանդիպի «հայրենիքի արի զավակներին», որոնց ահա կոչ է անում դիմացի շենքի տանիքին ամրացված ռադիոբարձրախոսը: Իսկ առայժմ քայլում է քաղաքի նեղլիկ, ծուռումուռ փողոցներով, սուլում իր ուրախ երգը և զարմանում փողոցների ամայության վրա: Օրը ցերեկով ի՞նչ է պատահել այս մարդկանց: Քաշվել են տները, դռները փակել, պատուհանները ծածկել: Եթե վարագույրների արանքից իրեն նայող վախեցած հայացքները չլինեին, կարող էր կարծել, թե քաղաքն ամայացել է ինչ-որ զարհուրելի համաճարակի հետևանքով:

(Շարունակելի)



ԷԼՄԻՐ ՄԿՐՏՉՅԱՆ

# ԴԱՐԲՆՈՑՈՒՄ



Սառած ճյուղը փողոցում
Փշրվում է ոտքի տակ,
Իսկ կոլխոզի դարբնոցում
Այնքան լա՜վ է, այնքան տա՜ք։

Դրսում ծառերը անգամ
Ցրտից մրսում են, դողում,
Իսկ դարբնոցի մեջ մարդկանց
Դեմքին քրտինք է շողում։

Աշխատանքն է հմայում
Հեքիաթի ու երգի պես,
Երկաթները քուրայում
Կարմրում են վարդի պես։

Զրնգում է մուրճի պաղ
Արձագանքը խոր ձորում,
Ասես ձմռան մեջ ուրախ
Գարունքվա երգն է ծորում։

Նկ. ԷԴՎԱՐԴ ԱՐԱՋՅԱՆԻ

# ՓԱՅՏՓՈՐԻԿԸ



Տակ-տու՛կ, տակ-տու՛կ,
Լսու՞մ եք դուք։
Փայտփորիկն է՝
Կարմրագլուխ,
Կուրծքը ճերմակ,
Թևերը թուխ։
Հենց որ հիվանդ
Ծառ է ճարում,
Կեղևներն է
Կտցահարում։
Տակ-տու՛կ, տակ-տու՛կ,
Լսու՞մ եք դուք։
Փայտփորիկն է,
Տես, աշխատում,
Հիվանդ ծառը
Վիրահատում։

Ու հետն էլ դեռ
Խոսում արագ.
— Քնով չանցնեք,
Զմռռանաք,
Գարունն արդեն
Մոտ է, գիտե՞ք,
Ելե՛ք, մի ձեր
Շուրջը դիտեք...
Տակ-տու՛կ, տակ-տու՛կ,
Լսու՞մ եք դուք։

Նկ. ԱՆԱՏՈԼԻ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ



# Փոքրերի և մեծերի խաղերը

ԱԲԻԳ ԱՎԱԳՅԱՆ

Օգոստոսի շոգ ետմիջօրե է։ Նույնիսկ Նորքի բարձրավանդակում էլ ոչ մի տերև չի դողում։ Օդում տարածվել ու մնացել է սաղարթի հաճելի գոլ բուրմունքը։ Օրվա այն ժամն է, երբ մեծերը ճաշել ու հիմա ամեն մեկը մի զով անկյուն գըտած հանգստանում է, իսկ փոքրերի համար ի՞նչ շոգ, ի՞նչ բան։

Ընդամենը մի ութնյակ, որոնք բոլորն էլ պատերով ու ցանկապատերով հարևաններ են, դուրս են եկել, հավաքվել են այգեփողոցում և մտածում են ի՞նչ խաղալ՝ ֆուտբո՞լ, թե՞ «բռնոցի»։

Նրանցից միայն Վանիկն ու Աշոտը չորրորդ դասարանցիներ են, մնացածը՝ երրորդ կամ երկրորդ։

— Տղե՛րք, եկեք «կռիվ-կռիվ» խաղանք, — առաջարկում է Վանիկը, — ես ու Աշոտը՝ հրամանատար, իսկ մնացածը՝ զինվորներ։

Այդ անիծյալ «կռիվ-կռիվը» Վանիկի ամենասիրած խաղն է։

Համաձայնում են ու վազ են տալիս խաղալիք զենքերը ու հրացանները բերելու։

Շոգ ու խաղաղ այգեփողոցում սկսում է «տրաքտրաքոցների» աղմուկը։

Ինչպես միշտ, այս անգամ էլ Վանիկը խախտում է խաղի կանոնները, և ահա սկսվում է նրա և Աշոտի շատ սովորական բանավեճը։ Մնացած վեցը կանգնել և սպասում են, թե գործը երբ կըհասնի տուրուդմփոցի։ Այդ գործում Վանիկն ավելի խորամանկ է, կրակը բորբոքում է ու փախչում։ Հիմա էլ, երբ Աշոտը ձեռքով հրում է նրան, Վանիկը բռունցքով խփում է նրա հենց նոր խուզած գլխին և փախչում դեպի տուն։ Մնացած յոթը հարայհրոցով ու փոշի բարձրացնելով՝ արշավում են փախստականի հետևից։ Վանիկը թափով բաց է անում դուռն ու ներս վազում։ Լսելով բակ խուժած երեխաների աղմուկը, պարանով ծառից կապած Ջանգին ցատկում է տեղից և սկսում է ուրախ հաչել։ Նա արդեն իր տարիներն ապրած, խաղաղ և հավատարիմ բակապահ շուն է՝ դարչնագույն մորթով, ճակատին՝ լուսնի նման կլոր ու սպիտակ մի խալ։ Վանիկը վազում և կանգնում է շան կողքին, ձեռքերը կանթում կողերին։

— Դե մոտ եկեք, — հաղթականորեն ասում է նա տաս-տասնհինգ քայլ հեռու կանգնած տղաներին, — Ջանգին ձեզ այնպես բզիկ-բզիկ անի, որ...

Բարդ հարց է. երեխաներն իրոք որ հիմա կանգնել են փակուղու առաջ և անհարմար են զգում ետ վերադառնալ։

Աշոտը գետնից մի քար է վերցնում ու շպըրտում շան վրա, որը վրիպում է։ Ջանգին ձգում է պարանը և սկսում է հաչել։ Երկրորդ նետված քարը դիպչում է շան ոտքին, ու ահա այստեղ տըխուր բան է տեղի ունենում. պարանը կտրվում է, երեխաները ճչալով սկսում են գլխակորույս փախչել, շունը հասնում է ու բռնում Աշոտի սրունքը։

Երեխայի արձակած ճիչն այնքան սարսափելի էր, որ Ջանգին ինքն էլ վախեցավ ու ետ վազեց դեպի իր ծառը։

Հետճաշյա քնից վեր ցատկեցին ոչ միայն Վանիկի հայրիկն ու մայրիկը, այլ նույնիսկ հարևանները և եկան թափվեցին Վանիկենց բակը։ Վանիկը շանն արագ կապեց ծառից և վախից ու զղջումից չգիտեր, թե ինչ աներ։ Աշոտը նստել էր գետնին, բռնել էր սրունքը ու շարունակում էր ճչալ։

Հարևան այգուց սարսափահար եկան Աշոտի մայրիկը, հայրիկն ու մեծ եղբայրը։ Բակում մի այնպիսի դժժոց բարձրացավ, որ ձայնը հասնում էր փողոցի ամենավերջին տունը։

Երկար տարիների լավ հարևանները խառնվեցին իրար միմյանց գլխի նախատինքների տարափ տեղալով:

— Այս թաղում ձեր շունը չարիք է,— ասում էր Աշոտի մայրը,— մոռացե՞լ եք, որ անցած տարի էլ մեր աքլորին զզեց, մեր կատվին խեղդեց...

— Որ չեք կարողանում մի շուն պահել, ուղարկեք թող գնա,— վրա էր տալիս հայրը,— և վերջապես ձեր ինչի՞ն է պետք շունը, ի՞նչ է, Ջոռբըստանու՞մ եք ապրում:

Իսկ Վանիկի հայրը, որը հանդարտաբարո մարդ էր, հանգստացնում էր հարևաններին.

— Դեպք է, պատահել է, Գարեգին, երկար տարիների հարևաններ ենք, անհարմար է, հիմա փոխանակ իրար հետ լեզվակռիվ տանք, եկեք դարմանենք երեխայի ոտքը: Նազիկ,— դիմեց նա կնոջը,— տանը յոդ ունե՞նք:

Տանը յոդ չունեին: Հարևաններից մեկը վազեց ու բերեց:

— Վա՜յ...— տեսնելով յոդի շիշը աղեկտուր ճչաց Աշոտը:

Շան հասցրած վերքը խորը չէր, բայց Աշոտը գիտեր, որ բոլոր դեպքերում էլ յոդն այրում է:

Բռնեցին երեխայի ձեռքերն ու ոտքերը և յոդով բամբակը դրեցին վերքին: Աշոտն այնպիսի մի ճիչ բարձրացրեց, որ Վանիկի կոկորդում բռունցքի պես ինչ-որ բան դեմ առավ և աչքերը լցվեցին:

Այդ ժամանակ փողոցով անցնում էր թաղի միլիցիոներ քեռի Արտեմը. տեսնելով բակում խռնըված մարդկանց իրարանցումը, պարտք համարեց ներս մտնել: Նա այնքան հեզ մարդ էր, որ երեխաներից ոչ մեկն էլ նրանից չէր վախենում:

Միմյանց ընդհատելով սկսեցին պատմել չարաբաստիկ եղելությունը: Քեռի Արտեմն իրեն հատուկ հանդիսավորությամբ կողքից կախված պայուսակից հանեց տետրը և թավ բեղերի տակից ասաց.

— Հը՜մ... ես պարտավոր եմ ակտ կազմել, ընկեր Շահվերդյան,— ասաց նա Վանիկի հայրիկին,— ինչո՞ւ եք շանն ազատ թողնում և չեք կապում շղթայով, թոկով կամ որևէ ուրիշ բանով:

Վանիկի հայրն արդեն դուրս եկավ համբերությունից.

— Դուք որտեղի՞ց գիտեք, թե մենք շանը չենք կապում...

— Մի՛ ճչացեք, խնդրում եմ,— նկատեց միլիցիոները,— կարծեմ ես ձեզ հետ ճչալով չեմ խոսում: Ես պարտավոր եմ ակտ կազմել և ձեզ կանչել պատասխանատվության:

Վանիկն արդեն համոզվեց, որ հայրիկին կկանչեն պատասխանատվության և, հավանաբար, կըկալանավորեն: Նորից ինչ-որ բան սեղմեց նրա կուրծքն ու կոկորդը, աչքերը թացացան, շուռ եկավ, գլուխը քարշ արած հեռացավ:

Ջանգին նստել էր ծառի մոտ ու նայում էր անսովոր իրարանցմանը: Տեսնես, բնազդորեն հասկանու՞մ էր, որ այդ բոլոր անախորժությունների պատճառն ինքն է: Վանիկը կանգնել էր շան մոտ և զայրույթից շրթունքները ծամելով նայում էր նրան:

— Ա՛ռ քեզ,— մռմռաց նա ու ոտքով հարվածեց շան կողին:

Շան համար այնքան անսպասելի էր այդ հարվածը, որ վեր ցատկեց ու զարմացած նայում էր տիրոջը, չէր հասկանում՝ տիրոջ այդ վարմունքը կատա՞կ էր, թե՞...

— Ա՛ռ քեզ...

Ոտքի երկրորդ հարվածը դիպավ Ջանգիի դընչին ու մեկ էլ.

— Հափ:



Վանիկն էլ ոտքը բռնեց ու ճչաց: Նրա ճչոցից կարծես բակում հավաքված մարդկանց աղմուկը մկրատով կտրեցին:

Մայրը վազեց դեպի տղան:

— Վա՜յ, քոռանամ ես,— բացականչեց նա,— այս ի՛նչ զուլում օր է...

Վանիկի ձեռքերն ու ոտքերն էլ բռնեցին ու յոդոտ բամբակը դրեցին վերքին: Ու, երբ նա էլ ճչաց.

— Վառվեցի՜...

Աշոտն այնպես լռեց, որ կարծես ոչինչ չէր պատահել:

Հիմա արդեն Վանիկի հայրիկն ու մայրիկն են սկսել:

— Ա՛յ մարդ, հազար անգամ ասել եմ, որ այդ շանը դուրս արա, ախր ինչի՞ է պետք, պառավել, վերջացել է:



Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

— Շունն ի՞նչ մեղք ունի,— նորից համբերությունից դուրս եկավ հայրիկը,— թե որ երեխաները նրան չբզբզեն...

Թաղի միլիցիոներ քեռի Արտեմը նրանց վեճն ընդհատեց.

— Դուք ձեր վեճերը թողեք վաղվան, այս երեխաներին անհրաժեշտ է հիմա տանել հիվանդանոց, որպեսզի կատաղության դեմ դեղ սրսկեն:

Սրսկեն...

Աշոտն ու Վանիկը նայեցին իրար, երկուսի աչքերում էլ կարծես մոտալուտ տագնապի արցունքներ էին դողում:

Ավտոմեքենա գտան, երեխաներին տարան հիվանդանոց, սրսկեցին ու ետ բերեցին՝ երկուսի ոտքերն էլ վիրակապերով փաթաթված: Երբ իջնում էին մեքենայից, իրենց վերադարձին սպասող երեխաների մոտով անցան ռազմադաշտից հաղթանակով վերադարձած զինվորների հպարտությամբ:

— Գնանք մեզ մոտ «շաշկի» խաղանք,— Աշոտին առաջարկեց Վանիկը:

Իսկ նրանց մայրերն իրարից բաժանվեցին լուռ և մի տեսակ թաքնված ամոթով:

Օգոստոսի օրն արդեն երեկոյանալու վրա է: Մեղմ քամի է բարձրացել, և օրվա շոգից թուլացած տերևներն սկսել են արթնանալ: Վանիկն ու Աշոտը նստել են ընկուզենու տակ փռված կարպետին, վիրակապերով փաթաթված ոտքերը ձգել են և կամացուկ ինչ-որ երգ շվշվացնելով «շաշկի» են խաղում: Նրանք արդեն մոռացել են մի քանի ժամ առաջվա տեղի ունեցած աղմկալի դեպքը, բայց մեծերը դեռ չեն մոռացել և՛ դեպքը, և՛ միմյանց հասցրած վիրավորանքները: Հայրիկը եկել նստել է այն փոքրիկ սեղանի մոտ, որի վրա համարյա ամեն երեկո հարևանի հետ նարդի են խաղում, նա ծնոտը բռունցքին է հենել ու լուռ նայում է իրենց բակերը սահմանող ցանկապատին: Աշոտի հայրիկն էլ իջավ իրենց բակը, քայլում է ցանկապատի երկայնքով, իբր թե ծաղիկներին է նայում:

Երեխաները երկուսն էլ այսօր «շաշկի» վատ են խաղում, որովհետև նրանք երկուսն էլ միաժամանակ մտածում են, որ այսօր, այս տանը, ինչ-որ լավ բան պակասում է:

Եվ ինչ լավ է, որ Աշոտի մեծ եղբայրը բակերը սահմանող ցանկապատի փոքրիկ դուռը բաց արեց:

— Ընկեր Շահվերդյան,— դիմեց նա Վանիկի հայրիկին,— նարդի չխաղա՞նք:

— Խաղանք,— աշխուժացավ Վանիկի հայրը.— ինչու՞ չխաղա՛նք:

Քիչ հետո Աշոտի հայրն էլ եկավ, նստեց փոքրիկ սեղանի մոտ ու սկսեց նայել նրանց խաղը:

Ամեն ինչ մոռացվեց: Դանդաղորեն մոտեցող այս երեկոն հիմա արդեն սկսեց նմանվել անցած բոլոր լավ երեկոներին:

Մայրիկը աստիճանների մոտ բալի մուրաբա է եփում ու խաղաղ զրուցում Աշոտի մայրիկի հետ:

Իսկ Ջանգին ձգվել է ծառի տակ, դունչը դրել է թաթերին և միայն տղաներին է նայում: Նա իր բարի, ժպտուն աչքերով կարծես կատակով ասում է.

«Հը՞, ո՞նց եք, տղե՛րք»:

## ՊԵՏՔ Է

Ինչպիսի՞ն պետք է լինի երեխաների տեխնիկական ստեղծագործությունը պիոներական դրուժինայում։ Դրա համար բավական է ունենալ որևէ խմբակ, որտեղ երեխաները ձեռք կբերեն տեխնիկական գիտելիքներ։ Ինչպե՞ս անել, որպեսզի տեխնիկական ստեղծագործությունը համագործակցվի հասարակական օգտակար աշխատանքի հետ, առանց որի անմիտ կդառնա պիոներական աշխատանքները դպրոցում։

Մի քանի դպրոցներում գործող «Պատանի տեխնիկների» խմբակներ շարունակ մտածում են ստեղծել ինչ-որ հետաքրքիր, խաղական գործ, այնպիսին, որ օգտակար լինի և ոգևորող։ Բայց երեխաներից շատերը երբեմն դժվարանում են։ Նրանք հաճախ ասում են. «Այ, եթե մենք ունենայինք...» Բայց այս կամ այն բանը ունենալու ցանկությունն իրականացնել, չգիտես ինչու, չեն փորձում։ Չեն հավատում իրենց ուժերին։ Նման դեպքերում պետք է երեխային համոզել, որ եթե ցանկանա, մտածի, կկարողանա։

Այդ պետք է լինի ջոկատավարի հիմնական խնդիրը։ Դրա համար պետք է նախաձեռնել հետաքրքիր և գրավիչ գործեր։ Այսպես օրինակ. կարելի է ստեղծել դպրոցական աշխարհագրական հրապարակ։ Այդ գործին պետք է մասնակցեն բոլոր ջոկատները, և հատկապես պատանի տեխնիկները։ Նրանցից յուրաքանչյուրը մի ֆանտաստիկ միտք է առաջադրում։ Իսկ ջոկատավարը, որպես կանոն, պետք է հուսադրի և լսի երազողներին։ Այսպես, հրապարակի կենտրոնում կառուցում են փոքրիկ պլանետարի և արհեստական ջրամբար։ Արհեստական ջրամբարի մոտ վեր է խոյանում գործող հրաբուխի փոքրիկ մակետը։ Հրաբուխի ստորոտին ստորգետնյա մուտքն է։ Երեխաները չեն մոռանում նաև տիեզերքը։ Հրապարակում կա նաև միջմոլորակային տիեզերանավ, որն, իհարկե, Երկիր մոլորակից երբեք

## ՎՍՏԱՀԵԼ

չի հեռանում, բայց հարկ եղած դեպքում մոտորը աշխատում է։ Նրանում տեղադրված է նավախցիկ և գործող էլեկտրահարմարանք։

Կարելի է պատրաստել նաև ռելիեֆային քարտեզ, եգիպտական բուրգեր, հիդրոէլեկտրակայանի գործող մոդելներ, երկաթուղային թունել և կամուրջներ։ Եվ այդ բոլորը իրենք՝ պիոներներն են ցանկանում պատրաստել։

Շինարարական հրապարակը ցանկալի է, որ լինի մեծ, գրավիչ։ Պետք է աշխատել այնպես անել, որ երեխաները հետաքրքրությամբ դիտեն շրջապատը, անտարբեր չանցնեն թերություններին և սխալների կողքով։

Դպրոցն ունի ուսումնա-արտադրական բրիգադա, որին խիստ անհրաժեշտ է տեխնիկան։ Ո՞վ պես · է այդ գործում օգնի նր-

**Սկսնակ ջոկատավարների՞.**

րանց, եթե ոչ պատանի տեխնիկները։

«Պատանի տեխնիկների» խմբակում կարող են գրվել մոտ 60 պիոներ՝ 5-ից 7-րդ դասարանի աշակերտներ։ Նրանք բոլորն էլ հարցասեր, հետաքրքրվող, աշխատասեր երեխաներ են, առանց դժգոհելու կատարում են ցանկացած գործը, ուրախանում են, երբ վստահում են իրենց։ Ճիշտ է, սկզբում դժվարանում են, բայց հետո ամեն ինչ կարգին է լինում։ Պատանի տեխնիկները շատ են կարդում, բաժանորդագրվում են բազմաթիվ տեխնիկական ամսագրերի։ Երեխաներին պետք է սովորեցնել ինքնուրույն օգտվել տեղեկատու գրականությունից։

Երեխաները շատ են ուրախանում, երբ տեսնում են իրենց աշխատանքի արդյունքները։ Երբեմն նրանց մոտ այնպիսի մտահղացումներ են լինում, որոնց իրականացումը տարօրինակ է թվում։ Բայց և անհրաժեշտ է լինում կատարել այն, ինչ նրանք շատ են ուզում։ Այլ կերպ՝ աշխատելը, ապրելը կդառնար անհե-

## ԵՐԵԽԱՆԵՐԻՆ

տաքրքիր։ Պետք է ուրախանալ երեխաների ամեն մի առաջարկության համար, որտեղ ստեղծագործելու որևէ միտք է առկայծում։

Չէ՞ որ այսօրվա պատանի տեխնիկներից շատերը վաղը կդառնան ինժեներներ ու մեխանիզատորներ։

# ՀԱՄԱՐՁԱԿ ԹՌԻՉՔՆԵՐԻ ՄԱՆԿՈՒԹՅՈՒՆԸ...

Հրթիռակայանում շարք են կանգնել արծաթափայլ տիեզերանավերն ու բազմաստիճան հրթիռները։ Կեսօր է։ Լույսերի շողով են ներկվել «Նաիրի» և «Արարատ» տիեզերանավերը, որոնք շուտով թռչելու են դեպի Մարս։ Նրանց շուրջը եռուզեռ է։ Տիեզերանավի խցիկից, գունավոր ապակու ետևից ասես ձեռքով է անում տիեզերագնացը։ Ասես, ուր որ է, կհնչի հրամանը և դ[illegible]սի մոլորակներն ու գալակտիկաները կթռչեն թռիչքի սպ[illegible]ող մյուս հրթիռներն ու տիեզերանավերը։ Այս տեսարանը դուք կարող եք տեսնել Երևանի պատանի տեխնիկների հանրապետական կայանի ցուցասրահների մի անկյունում միայն։ Բայց կայանը ինք-



Պատանի տեխնիկների կայանի մի անկյունն էլ զբաղեցրել է հրթիռակայանի մակետը

Յուրան իր ընկերների հետ 1966 թվականի ամռանը եղավ Մոսկվայում, ծանոթացավ Միության իր բազմազգ հասակակիցների գործերին: Իսկ 1967 թվականի գարնանը, նրա՝ ժամանակի ռելեով գործող մակետը կճամփորդի Մոսկվա, և այն ժամանակ երևանցի պատանու օրինակին շատերը կհետևեն:

Դիրեկտորի սեղանին թափված են հանրապետության տարբեր վայրերից ուղարկված ծրարներ: Երեխաները պատմում են իրենց լավ գործերի մասին, խորհուրդներ հարցնում կայանից: «Խոր աշուն է հիմա Ապարանում,—կարդում եմ նամակներից մեկում:— Այստ ժամերին հաճախ ենք նավամոդելներն առած մեր նոր լիճը գնում: Մենք փորձարկում ենք մեր նոր նավակները, բայց անհամբերությամբ սպասում ենք այն օրվան, երբ պատրաստ կլինի մեծ կրոսանավի մակետը: Շատ կցանկանայինք, որ հանրապետական մրցումներում մեր կրոսանավը առաջին մրցանակի արժանանար...» Ալավերդցի պատանի տեխնիկներն էլ մեխանիկական ծրագրով աշխատող հրթիռակիր են ստեղծել, Սիսիանի շրջանի Դաստակերտի դպրոցի սաները՝ աշակերտների գիտելիքներն ստուգող սարք և այլն:

նատիպ ու ռոմանտիկ մի աշխարհ է իր հազար ու մի սարքերով, և այդ բոլորը նրանց համար, ովքեր հրապուրվում են ռադիոտեխնիկայով ու ավիամոդելիզմով, էլեկտրատեխնիկայով ու ֆիզիկայով, տեխնիկայի, գիտության նորույթներով: Եվ օրվա որ ժամին էլ գնալու լինեք կայան, այնտեղ պարապող 450 պիոներ-դպրոցականներից որին էլ հանդիպեք, հետաքրքիր և ուսանելի շատ բան կիմանաք:

Ահա դիմացի սենյակում փորձանոթների շուրջն օղակված հրաշագործ քիմիայի փորձերն են դիտում կարմիր վզկապավորները: Ու հանկարծ՝ տրա՛ք-տրա՛ք:

Փորձանոթում հրդեհվում է մագնեզիումի ժապավենը: Մյուս սենյակից՝ ռադիոկայանների եթեր արձակած կանչերն են: Ահա և Բելինսկու անվան դպրոցի 10-րդ դասարանցի Յուրան: Գլուխը հակել է գրպանի ռադիոընդունիչի վրա, ու հանկարծ՝ Շառլ Ազնավուրն է երգում: Կողքի ընկերը՝ Հակոբ Շահբազյանը, կոդում է կատարում: Մյուսների ընդունիչների պտտվող սլաքները սենյակը լցրել են կանչերով, իտալական երգերի կախարդանքով: Իսկ ինչ-որ կայան խուլ հնչյուններ է արտասանում: Տղաներն այստեղ պանապան սարքեր ու գրպանի ընդունիչներ են պատրաստում, ֆիզիկայի փորձեր կատարում: Մի անկյունում Սամվելն ու Արամը գլուխները կախել են գծագրերի վրա, ամսագրերն են թերթում, ինչ-որ հաշվումներ անում: Իսկ օդը լիքն է երաժշտությամբ ու վառված բույրով: Կայանի դիրեկտոր Անդրանիկ Հայրապետյանը ցույց է տալիս Յուրայի հինգհարկանի շենքի մակետը: Շատ ինքնատիպ աշխատանք է կատարել նա․ կառույցի մակետի ներսում տեղադրել է ժամանակի ռելե: Եվ եթե շենքը ներս մտնողը ցանկանում է վառել լույսը, ապա ինքնուրույն կերպով այն միանում է: Հսկայական աշխատանք է կատարել շնորհալի պատանին: Այն շատ պրակտիկ է և կարելի է անգամ կիրառել կենցաղում:

Երկար միջանցքում ցուցադրված յուրաքանչյուր սարք իր կենսագրությունն ունի: Սարքերից երկուսը անգամ Նյու-Յորքում են ցուցադրվել: Մի քանի մոդելի տակ գրված է Մարտին Ղարիբյան: Մարտինին կայանում շատերն են ճանաչում: Նա առաջին անգամ այստեղ եկավ իրենց բակի տղաների հետ, որոնք սովորում էին Տերյանի անվան դպրոցում: Մարտինը մի անգամ նրանց հետ եկավ կայան: Ինչքա՜ն գործիքներ կային, ամսագրեր, մոդելներ: Այդ գիշեր նա կիսաքուն անցկացրեց: Երազում տիեզերանավեր էր վարում, ինքնաթիռի մոդելներ թռցնում:

Մյուս օրը Մարտին Ղարիբյանը նորից կայանում էր: Մի քանի խմբակներում ընդգրկվեց: Շատ բան սիրեց, բայց ամենից շատ՝ ավիամոդելիզմը: Կիրակի օրերը, մարզչի՝ ընկեր Ֆերդինանտի հետ քաղաքային օդանավակայան էին գնում: Մարզումներ էին կատարում: Մարտինը շատ բան սովորեց կայանում: Սկսեց հաճախել նաև մարմնամարզության պարապմունքներին, լրացրեց առաջին կարգայինի նորմա: Օդանավակայանում մի անգամ մի օդաչու քեռի ասել էր.

— Օդաչուն կամ տիեզերագնացը ամեն ինչ պիտի իմանա: Եվ հետո ուժեղ պիտի լինի, առողջ, շուտ կողմնորոշվող...

Եվ Մարտինը ժամանակ գտնում էր այդ բոլորը կատարելու համար: Ու մի օր էլ ընկեր Ֆերդինանտը ասաց.

— Պատրաստվիր, Ստեփանավան ⁄ ես մեկնում,

հանրապետական մրցումների:— Տղայի ուրախությանը չափ չկար: Նա դարձավ Հայաստանի պատանեկան չեմպիոն ֆուտբոլամոդելային ռետինամոտորային ավիամոդելների:

Մարտինի՝ որպես ավիամոդելիստի, կենսագրության անմոռանալի օրերը կապված են Ղրիմի «Արտեկ» միջազգային ճամբարի հետ: «Կիպարիսենի» ճամբարի առջև կախարդիչ Սև ծովն էր: Երբեմն նա բարձրանում էր «Արջասար», նստում մի բարձր տեղ ու նայում ծովին: ճայերը թռչում էին ջրի վրայով: Իսկ նա մտածում էր իր ավիամոդելի մասին.

— Ես շատ լավ կպատրաստեմ և կանվանեմ այն «Ղրիմյան ճայ»:

Ու թռցնում էր մոդելը: Ձեռքը պահում էր արևի առաջ ու դիտում: Իսկ մոդելը դեռ թռչում էր: Ներքևից, ծովափին լողացող ընկերները ձայնում էին՝

— Մարտինի «ճայը»...

Բոլորը գիտեին տղայի երազանքի մասին ու հաճախ էին ասում՝ «համառն է, օդաչու կդառնա»:

Արտեկից եկավ ոսկյա մեդալներով: Իսկ 1966 թվականի ամռան վերջին Իժևսկում կայացան համամիութենական ավիամոդելիզմի մրցումներ: Եկել էին Սիբիրից, Լենինգրադից, Մոսկվայից, Վրաստանից, Էստոնիայից, Ուզբեկստանից և այլ վայրերից: Մարտինը այնտեղ ներկայացել էր իր լավագույն մոդելով, որի վրա նա ընկերների հետ միասին աշխատել էր երեք տարի: Նախավերջին մրցողը՝ մոսկվացի մի պատանի էր. նրա մոդելը օդում էր, լավ էր թռչում, 769 միավոր: Վերջինը ինքն էր: Կկարողանա՞ր գերազանցել մոսկվացուն: Առաջին փորձն անհաջող անցավ: Ահա և վերջինը: Այնպես տագնապով էր բաբախում սիրտը: Իսկ իր ինքնաթիռ մոդելը ահա թռչում էր վեր, ավելի վեր: Րոպեներին գումարվում են վայրկյանները: Վայրէջք: 881 միավոր: Գերազանց արդյունք: Բոլորը շնորհավորում են և հանդիսավոր պայմաններում ալեխառն մազերով ավիացիայի պահեստի գեներալը Մարտինին հանձնում է ոսկե մեդալ.

— Ապրես, տղաս: Հայաստանի՞ց ես,-ասում ես...

— Այո: Երևանից:— Ու կարմրում է հուզմունքից:

— Ձեր Նելսոնի հետ միասին ենք կռվել Բալթիկայում: Աշխատիր, սովորիր: Բազեները խիզախներ են, նրանց թռիչքը կիսատ չի մնում...

Շատ ու շատ կարելի էր պատմել պատանի տեխնիկների մասին, բայց կարևորն այն է, որ կյանք մտնելուց առաջ նրանք այստեղ սովորում են, հմտություններ ձեռք բերում, կյանքում համարձակ թռիչքներ անելու համար:

ՌՈԲԵՐՏ ԴՈՎԼԱԹՅԱՆ


Պատանի ռադիոսիրողներ Մկրտիչը և Լևոնը փորձարկում են Փաշակերտների գիտելիքներն ստուգող էլեկտրասարքերը




# ԼԵՆԻՆԱԿԱՆԻ ԳԵՐԲԸ

Հեռվում արևի ճառագայթները ոսկեզօծել են Արագածի սիգապանծ գագաթը, երևում են արդյունաբերական ձեռնարկությունների ծխնելույզները: Վառ կարմիր գույնը պատմում է քաղաքի հեղափոխական անցյալի և երջանիկ ապագայի մասին: Այդպիսին է մեր հանրապետության խոշորագույն քաղաքի՝ Լենինականի գերբի ընդհանուր տեսքը, որ ստեղծվեց վերջերս լենինականցիների պահանջով՝ քաղաքը Լենինի անունով կոչելու 40-ամյակի կապակցությամբ:

Գերբը նախագծել և ձևավորել է մեծ վարպետը՝ Մարտիրոս Սարյանը:

Գերբի նկարի տակ պատկերված են Լենինական քաղաքի ազդասոտաները, որ գրել է կոմպոզիտոր Արամ Խաչատրյանը: Քաղսովետի գործկոմը հաստատել է «Լենինական քաղաքի պատվավոր քաղաքացի» կոչումը համապատասխան դիպլոմով և ոսկե բանալիով: Քաղաքի պատվավոր քաղաքացիներ են արդեն դարձել Մ. Սարյանը, Ա. Խաչատրյանը, Սովետական Միության մարշալ Բաղրամյանը, Վ. Համբարձումյանը, տիեզերագնացներ Վ. Վ. Տերեշկովան և Ա. Գ. Նիկոլաևը:

Լենինականի գերբը կարելի է տեսնել պատվոգրերի, հուշանվերների վրա: Պատրաստված են նաև գերբը պատկերող հատուկ կրծքանշաններ: Շուտով գերբը կդրվի քաղաքի մուտքի մոտ, որտեղից Լենինական են մտնում հազարավոր հյուրեր: Գերբը կերևա նաև Լենինականի արդյունաբերական արտադրանքների վրա:








# ԻՆՉՈՒ՞ Է ԿՈՉՎՈՒՄ ՍԵՎ ԾՈՎ

*Սիրելի խմբագրություն, մենք ապրում ենք Սև ծովի ափին և նկատել ենք, որ նրա ջուրը ավելի շատ կապտականաչ է, քան սև, բայց ինչու՞ են անունը դրել Սև ծով: Խնդրում ենք պատասխանել:*

*Աբխազական ԱՍՍՀ, Գագրայի շրջան, Ալախաձե, հայկական դպրոցի մի խումբ աշակերտներ*

Սև ծովը միշտ այդպես չի կոչվել: Դարերի ընթացքում մի քանի անգամ փոխվել է նրա անունը. Հին հույները այն կոչում էին Եվքսինյան Պոնտոս, այսինքն՝ հյուրընկալ ծով: Մեր նախապապերն ասում էին Պոնտական կամ Ռուսական ծով:

Իսկ թե ինչու է հետագայում կոչվել Սև ծով, ստույգ դժվար է ասել: Գոյություն ունի մի քանի կարծիք: Պատմաբաններից ոմանք «Սև ծով» անվան առաջացումը բացատրում են հետևյալ կերպ. թուրքերն ու այլ նվաճողները, որոնք Սև ծովի ափերն էին գալիս տեղի բնակչությանը ստրկացնելու նպատակով, լուրջ դիմադրության էին հանդիպում տեղական ցեղերի կողմից: Իբր թե այդ պատճառով էլ թուրքերը ծովի անունը դրել են Սև, այսինքն անհյուրընկալ:

Երկրորդ կարծիքի համաձայն Սև ծով է կոչվել ուժեղ ալեկոծությունների ու փոթորիկների պատճառով, որոնց ժամանակ ծովի ջուրը պղտորվում է, սևանում: Սակայն այս կարծիքը համոզիչ չէ, որովհետև ուժեղ փոթորիկները բնորոշ չեն Սև ծովին: Ուժեղ ալեկոծություններ (6 բալից բարձր) այստեղ տարեկան լինում է միջին հաշվով 17 օր: Իսկ ինչ վերաբերում է փոթորիկների ժամանակ ջրի սևանալուն, ապա դա հատուկ է բոլոր ծովերին և ոչ միայն Սև ծովին: Ի միջի այլոց, հայտնի է, որ Մագելանը «Խաղաղ» անունով է կոչել երկրագնդի ամենաանհանգիստ ու կատաղի օվկիանոսը, որովհետև նրա նավարկության ժամանակ փոթորիկներ գրեթե չեն եղել:

## ՏԱՐՕՐԻՆԱԿ ՁՈՒԿ

*Ավստրալիայի և Նոր Գվինեայի ջրերում ապրում է մի հետաքրքիր ձուկ: Լողալիս պոչը առջևում է, իսկ գլուխը՝ հետևում: Այս ձկան գլխի վրայով մի սև շերտ է անցնում, որի պատճառով աչքերը բոլորովին չեն երևում: Իսկ պոչի վրա կա սև կետ,*



*որ աչք է հիշեցնում: Հեռվից նրա պոչը գլխի է նման, իսկ գլուխը՝ այլ ձկների պոչի: Եվ այդ ամենը գիշատիչներին խաբելու համար է: Վտանգի պահին այս ձուկը կարող է վայրկենապես փոխել իր շարժման ուղղությունը և արագ լող տալ ոչ թե պոչով դեպի առաջ, այլ՝ գլխով:*

## ՕՁԵՐԸ ԵՎ ՓՆԱԾ ԿՈԼԻԲՐԻՆ

*Օձերը որսի վրա կարող են հարձակվել նույնիսկ այնպիսի մթության մեջ, երբ աչքերը ոչինչ չեն նկատում: Սողուններին օգնում է գլխի վրա գտնվող այն հատուկ օրգանը, որը որսում է կենդանի էակներից արձակվող ջերմային ճառագայթումները:*



*Բայց գիշերով օձերը չեն կարող գտնել կոլիբրիի բույնը: Օդի ջերմաստիճանի հետ միաժամանակ ընկնում է քնած թռչնակի մարմնի ջերմաստիճանը: Այդ պատճառով էլ օձերի համապատասխան օրգանը դառնում է անզոր:*

Գուցե Սև ծովի հետ էլ տեղի է ունեցել նույնպիսի սխալ:

Երրորդ կարծիքի կողմնակիցները գտնում են, որ մետաղյա իրերը (օրինակ՝ խարիսխը) երբ որոշ խորության վրա ջրի մեջ պահելուց հետո դուրս են բերում, ծծմբաջրածնի ներգործության հետևանքով սևացած են լինում: Այս կարծիքը համեմատաբար ավելի հավանական է թվում, որովհետև կապված է Սև ծովին բնորոշ առանձնահատկության հետ:

Սիրելի երեխաներ, իսկ դուք գիտե՞ք, թե երբ և ինչպես է առաջացել Սև ծովը:

Տասնյակ միլիոնավոր տարիներ առաջ Միջերկրական, Մարմարի, Սև, Ազովի, Կասպից և Արալյան ծովերի տեղում փռված էր մի հսկայական ջրատարածություն, որն ըստ դիցաբանության կոչվել է Թետիսի ծով: Այսպես է կոչվել ծովերի արքա Նեպտունի աղջկա՝ Թետիսի պատվին: Ծովը բաղկացած էր երկու մասից. արևմտյան (այսօրվա Միջերկրական ծովը) և արևելյան (մնացած մասը): Ծովի արևմտյան մասի ջուրը աղի է, իսկ արևելյանը՝ քաղցրահամ, որովհետև այստեղ շատ գետեր են թափվում:

Մոտավորապես 13 միլիոն տարի առաջ, Ալպյան լեռների առաջացման կապակցությամբ Թետիս ծովի երկու մասերի միջև կապը կտրվեց: Արևմտյան մասի տեղում ձևավորվեց այժմյան Միջերկրական ծովը: Իսկ 8 միլիոն տարի առաջ կազմավորվեց մեկ ուրիշ ծով, որը հետագայում կոչվեց Պոնտական ծով. նրա մեջ մտնում էին Սև և Կասպից ծովերը: Այսօրվա Կովկասյան ու Ղրիմի լեռները այն ժամանակ կղզիների նման դուրս էին ցցված ջրի մեջ: Պոնտական ծովը գրեթե քաղցրահամ էր: Աղիությունն ավելի պակաս էր, քան այսօրվա Կասպից ծովինը: Հետագայում, ցամաքի բարձրանալու հետևանքով, անջատվեցին իրարից Սև և Կասպից ծովերը: Կասպից ծովը մնաց քաղցրահամ, իսկ Սև ծովը կամաց-կամաց սկսեց աղիանալ: Պատճառն այն էր, որ Սև և Միջերկրական ծովը մի քանի անգամ միացել ու անջատվել են: Վերջին միացումը տեղի է ունեցել 6—7 հազար տարի առաջ: Եվ ամեն անգամ Միջերկրականի աղի ջրերը փոխում էին Սև ծովի ջրի բաղադրությունը, դարձնում ավելի ու ավելի աղի: Միջերկրական ծովի աղաջրի հոսքից շատ կենդանիներ են ոչնչացել Սև ծովում: Այդ օրգանիզմների քայքայումը ծովի խորքում, որտեղ թթվածին չկա, ստեղծել է ծծմբաջրածնի այն սկզբնական պաշարը, որն աստիճանաբար շատացել է և մնում է մինչև հիմա:

Արդեն 4—5 հազար տարի է, որ Սև ծովը որևէ էական փոփոխության չի ենթարկվել: Ծրջակա լեռները հիմա էլ շարունակում են բարձրանալ, բայց շատ դանդաղ (հարյուր տարում մի քանի միլիմետր կամ սանտիմետր): Միաժամանակ տեղի է ունենում ծովի ջրի բարձրացում (հարյուր տարում 20—25 սանտիմետր):

## ՊԱՐՈՂ ՌՈԲՈՏ

Ռադիոտեխնիկ Ֆորենցան ապրում է Իտալիայում: Տասը երկար տարիներ և վիթխարի համբերություն պահանջվեցին նրանից, որպեսզի նա կարողանա պատրաստել այնպիսի մի ռոբոտ, ինչպիսին գիտա-ֆանտաստիկ վեպերում է: Ռոբոտի բարձրությունը 1,5 մետր է, գլուխը, ձեռքերը և ոտքերը բավականաչափ շարժուն են: Հիմնական սարքավորումը տեղավորված է փորի մեջ, այդ թվում մեկ կիլոմետր երկարությամբ էլեկտրալար, 72 էլեկտրալամպ, 90 տրանզիստոր:



«Ջեռոնիմո—1» կոչվող ռոբոտի պատրաստումը ռադիոտեխնիկի վրա նստել է մեկ միլիոն լիր: Ռոբոտը կարողանում է սեղանին փռել սփռոցը, կարգի բերել բնակարանը, սրբել հատակը և նույնիսկ... ավանակը տանել արածացնելու: Առայժմ Ջեռոնիմոն դանդաղ է շարժվում, բայց Ֆորենցան աշխատում է վերացնել այդ թերությունը: Նա միաժամանակ հավատացնում է, որ Ջեռոնիմոն շուտով կմասնակցի ժամանակակից պարերի մրցումներին:

## ՌԱԴԻՈՖԻԿԱՑՎԱԾ ՃԱՅԵՐ

*Որպեսզի ճայերը չխփվեն վայրէջք կատարող և օդ բարձրացող ինքնաթիռներին, Հոլանդիայի օդանավակայաններից մեկում դրել են ճայի խրտվիլակներ, որոնք ռադիոֆիկացված են: Հատուկ սարքերը ժապավենի վրա ձայնագրված իսկական ճայերի ազդանշալից ճիչերը տարածում են շրջակայքով մեկ և վախեցնում թևավորներին:*

Լույս է տեսնում 1923 թվականից



# ՊԻՈՆԵՐ

1 ՀՈՒՆՎԱՐ 1967

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*
*Եկ. ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ*

Գլխավոր խմբագիր՝ Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ



**„Пионер“** на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.

*Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, Հեռախոսներ՝ 2—44—83, 2—68—16, 2—59—06։*

*ՎՖ 06264։ Պատվեր՝ 2234։ Տպաքանակ՝ 45.800։ Տպագրական 3 մամուլ։ Ստորագրված է տպագրության 13/I, 1967 թ.։ ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության պոլիգրաֆկոմբինատ։ Երևան, Տերյան փ. № 91։*

Գինը՝ 10 կ.



# ՀՄԱՅԻՉ ԴԵՐԱՍԱՆԸ

Կինոդերասաններ պատրաստող դասընթացներում քննություն է: Մեկը մյուսի հետևից իրենց ամբողջ շնորհքն ու գիտելիքներն են ցուցադրում քննվողները և, չարժանանալով խստապահանջ հանձնաժողովի ուշադրությանը, ցած են իջնում բեմահարթակից: Եվ ահա բեմ է բարձրանում գեղեցիկ արտաքինով մի երիտասարդ: Նրան ոչ ոք չէր ճանաչում, նա չէր սովորել կինոդերասանական դասընթացներում, այլ ֆրանսիական նշանավոր կինո-ռեժիսյոր Մարսել Կառնեյի երաշխավորությամբ նրան իրավունք էին տվել մասնակցելու քննությանը: Անծանոթը նստած է անկաշկանդ և ընկլչում է իր մենախոսությունը: Մի քանի նախադասությունից հետո հանդիսասրահում տիրում է քար լռություն: Բոլորի դեմքերը հիացմունք են արտահայտում: Երբ ավարտվում է մենախոսությունը, լսվում է ծափահարություն՝ մի բան, որ արգելված էր քննության ժամանակ:



Այդ տաղանդավոր երիտասարդը Նիցցայի իրավաբանական ինստիտուտի ուսանող, ապագա նշանավոր կինոաստղ Ժերար Ֆիլիպն էր:

Իսկական արվեստի բարձունքներին հասնելու համար, բնական շնորհք ու տաղանդ ունենալը բավական չէ, անհրաժեշտ էր սովորել, ձեռք բերել վարպետություն, գիտելիքներ:

Եվ ահա ժեժեն, ինչպես կոչում էին նրան ծնողները, իրավաբանական կրթության հետ զուգահեռ կոնսերվատորիայի դրամատիկական բաժնում սովորում է դերասանական արվեստը և դերասանի վարպետության մրցանակաբաշխության ժամանակ ստանում առաջին կարգի մրցանակ:

Կարճ ժամանակամիջոցում ժերար Ֆիլիպը դառնում է ֆրանսիական թատրոնի նշանավոր դերասան: Մեկը մյուսի հետևից նա խաղում է բարդ և դժվարին դերեր: Սակայն ժերարի երազանքը կինոն էր:

Առաջին անգամ 1943 թվականին ժերար Ֆիլիպին հանձնվում է մի փոքրիկ տղայի՝ Միկի դերը «Ծաղկած ափի տղան» ֆիլմում, այնուհետև, մի քանի տարի անց, նրան է հանձնվում Դոստոևսկու «Ապուշ» վեպի իշխան Միշկինի դժվարին, բայց հետաքրքիր դերը:

«Ապուշը» դարձավ իմ առաջին իսկական հանդիպումը կինոյի հետ,—գրում է ժերար Ֆիլիպը,—ես առաջին անգամ շոշափեցի դերասանի մասնագիտությունը»:

Սովետական հանդիսատեսը ցնծությամբ ընդունեց այն կինոնկարները, որտեղ գլխավոր հերոսի դերով հանդես էր գալիս ժերար Ֆիլիպը: Ո՞ւմ սիրտը չի գերել «Ֆանֆան Տյուլպան», «Պարմի մենաստանը», «Տիլ Ուլենշպիգել», «Կարմիրն ու սևը» և այլ ֆիլմերում ժերարի փայլուն դերակատարումները:

Կինոռեժիսյոր Քրիստիան ժակը պատմում է, թե ինչպես մի անգամ «Պարմի մենաստան» կինոֆիլմում Ֆարնեզե աշտարակից Ֆաբրիցիոյի փախուստի տեսարանի նկարահանման ժամանակ պահանջվում էր 18 մետրը բարձրությունից պարանի օգնությամբ ցած իջնել: ժերար Ֆիլիպը հրաժարվում է սպորտսմեն-ալպինիստից, որոնք նման դեպքերում փոխարինում են դերասանին: Իր վրա վերցնելով այդ դժվարին և վտանգավոր վայրէջքը: Դեռ ավելին, վայրէջքի նկարահանումը կրկնվում է երկրորդ, երրորդ, չորրորդ և ավելի անգամ: Եվ երբ ավարտվում է վայրէջքի հատվածի նկարահանումը, այդ ժամանակ միայն նկատում են դերասանի ձեռքի արյունը: Պարզվում է, որ դեռ առաջին անգամ իջնելիս, պարանը քերել էր Ֆիլիպի ձեռքի ափը, բայց նա զսպելով ցավը շարունակ կրկնել է իր դերը:

«Տիլ Ուլենշպիգել» ֆիլմի նկարահանման պահին, հանկարծակի բռնկվում է հրդեհ, որին շատ մոտ, վառոդով լցված մի տակառի վրա նստած էր մի տղա: Բոլորը իրարանցման մեջ էին: ժերարը նկատելով այդ, առանց ժամանակ կորցնելու արհամարհելով վերահաս վտանգը, իրեն նետում է բոցերի մեջ և երեխային դուրս է բերում կրակե լեզուների միջից: Եվ դեռ դերասանը հազիվ է հասցնում մի քանի քայլ հեռանալ, երբ տակառի կտորները հօդս են թռչում: Ու թեև ինքը



մի փոքր վիրավորվեց, սակայն երեխան փրկված էր:

Գեղեցիկ արտաքինի և մեծ տաղանդի տեր դերասանը ուներ հոգեկան և մարդկային բարձր հատկանիշներ, այդ երևում է նույնիսկ այն հարցախաղերից, որ կազմակերպվում էին Ֆրանսիայում և որոնց հաճույքով մասնակցում էր ժերար Ֆիլիպը:

— Ամենից շատ դուք ի՞նչն եք ատում:

— Անբարեխղճությունը, բնավորության թուլությունը, պրոֆեսիոնալ ինքնագիտակցության բացակայությունը:

— Ամենից շատ ի՞նչն է Ձեզ ուրախացնում և անհանգստացնում:

— Մարդը:

— Կյանքում ի՞նչն է Ձեզ զարմացնում:



— Նրա կարճատևությունը:

— Ո՞րտեղ եք դուք լավ զգում:

— Տանը:

— Ափսոսու՞մ եք դուք ինչ-որ բանի:

— Անցողիկ երիտասարդության համար:

— Ձեր բարեկամների հատկապես ո՞ր հատկանիշներն եք գնահատում:

— Լռությունը, սիրում եմ, որ ուրիշներն էլ հետևեն դրան:

— Ի՞նչ մասնագիտություն կընտրեիք, եթե չլինեիք դերասան:

— Կընտրեի բժշկի մասնագիտություն:

— Ձեր կարծիքով ո՞վ է մեր դարաշրջանի ամենանշանավոր անձնավորությունը:

— Լենինը:

1959 թվականի նոյեմբերի 25-ին մարեց տաղանդավոր դերասան ժերար Ֆիլիպի կյանքը, իր ստեղծագործական և կյանքի գարունքին, երբ նոր էր լրացել նրա 37 տարին:

Ֆրանսիական նշանավոր բանաստեղծ Լուի Արագոնը գրում է. «ժերար Ֆիլիպը իրենից հետո թողեց միայն գարնան պատկերը... Ամբողջ աշխարհում այս մահը շշմեցրեց նրանց, ում գլուխը ստեղծված էր երազանքի, իսկ սիրտը ջերմ սիրո համար...»

*ԳՈՒՍՏԱՎՈՍ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

*Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ*



# ՆԿԱՐՈՒՄ ԵՆ ՄԱՆՈՒԿՆԵՐԸ



ՃԱՆԱՊԱՐՀ

ԽԱՄՈՅԱՆ ԱԼԲԵՐՏ
Թալինի շրջան, գ. Դավթաշեն, 4-րդ դաս. աշ.



ԱՂՋԻԿԸ

ԱՐՈՒՏՋՅԱՆ ԱՆԱՀԻՏ
Երևան, № 83 դպ. 8-րդ դաս. աշ.



ԿԱԿԱՉՆԵՐ

ՌՈՍՏՈՄՅԱՆ ՀՐԱՆՏ
Երևան, № 100 դպ., 3-րդ դաս. աշ.